# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص. ب ٢١١١ بالقاهرة ج ع م - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالارث)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) • Tél. 915013
Adresse Télégraphique TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef: SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԵԱՆ

Հիմնուած 1948ին
Տպաքանակ 3000

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 557 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ՅՈՒՆՈՒԱՐ 1975 | ՀԱՏԸ ԶԵՌՈՒԲԷ 4 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. | ١٩٧٥ يناير ٢ الخميس — ٥٥٧ رقم عدد


ԽՈՐՀՈՒՐԴ՝ ՆՈ՛Ր ՏԱՐՈՒԱՆ

## 1975 ԹՈՒԱԿԱՆԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ ՀԱՅՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ԳԷՈՐԳ ՏԱՐՕՆԻ

Տարի մը եւս կու գայ աւելնալու Մարդկութեան տարեգրութիւններուն վրայ։

Տարի մը եւս, իր լրիւ օղակաւորումով, իր երփներանգ կառուցուածքով, կը պատրաստուի մուտք գործելու Մարդկութեան Պատմութեան թանգարանէն ներս։

1974 թուականը խորհրդանշող այս Տարին, կ'երթայ առ յաւէտ միանալու Անցեալին, որ կը հանդիսանայ խարիսխը՝ մեր Ներկային եւ, լուսատու հեռանկարը՝ մեր Ապագային։

1974 Տարուան մեկնումով, անգամ մը համար եւս, յարատեւ վերափոխութեան, յարատեւ վերանորոգման կարճատեւ բայց խորիմաստ հանգրուանը կը բոլորէ ժամանակակից Մարդկութիւնը։

Վերափոխութիւն եւ վերանորոգում պարգեւող իր այս հանգրուանով է, որ կը մասնաւորուի, կ'իմաստաւորուի եւ կ'արժէքաւորուի խորին խորհուրդը՝ Նոր Տարուան, որպէս ամրակուռ կամուրջ, նետուած՝ Անցեալէն դէպի Ներկան ու Ապագան։

Առանց Նոր Տարուան ջամբած այդ վերափոխութեան ու վերանորոգման, Մարդկութիւնը պիտի չկարենար ապրիլ ա՛յդքան փայլուն իր Զարթօնքը, պիտի չկարենար ճախրել Գիտութեան բարձրագոյն ոլորտներուն եւ անծայրածիր հորիզոններուն մէջ։

Այս ճշմարտութեան մէջ է, որ կը կայանայ գեղեցկութիւնը Նոր Տարուան, հինին յաջորդող, բայց մի՛շտ, իր գոյութիւնը հինին զօրութեան վրայ ամրապնդող Նոր Տարուան։

Ու այս հաւատքով է, որ Մարդկութիւնը կ'ողջունէ Գալուստը՝ Նոր Տարուան, որպէս կենարար աղբիւր՝ Նո՛ր Յոյսերու եւ Նո՛ր Իղձերու։

Յաւերժական բնութիւնը կը վերածնի իր դալա՛ր Գարունին հետ։

Իսկ նոյնքա՛ն յաւիտենական Մարդկութիւնը կը վերածնի իւրաքանչիւր Նոր Տարուան հետ, թէեւ, մթնոլորտային ցո՛ւրտ իրավիճակի տակ, բայց վեհա՛նձն հոգիներու կենսաւորող ջերմութեամբ։

Մեզմէ անդարձօրէն կը բաժնուի Հին Տարին, մեզի բերած իր ուրախութիւններով ու, միաժամանակ, մեզի առթած իր վիշտերով։

Ի սրտէ կ'ողջունենք Նոր Տարին, որ թէեւ անկերպարան ու անդիմագիծ է տակաւին, եւ սակայն, իր երեւումով, մեզի, Մարդկութեան, կը բերէ Յոյսը, առաւե՛լ Յոյսը, կորիզն ու առանցքը՝ մեր Գոյութեան, հիմնաքարը՝ վաղուան մեր աւելի պայծա՛ռ օրերուն։

Ի՞նչ պիտի արժէր Նոր Տարին, առանց Նոր Յոյսերու ծըլարձակման։

Ինչպիսի՜ դա՛ռն ճակատագիր մը պիտի ունենար Մարդկութիւնը, առանց իրեն պայծառատեսութիւն ու կորով ապահովող Նոր Յոյսերու վերափթթումին։

Նո՛ր Տարի ու Նո՛ր Յոյսեր։

Խորին Խորհուրդը՝ ապրող եւ ստեղծագործող Մարդկութեան։

* *

Պատմութեան անյիշատակ ժամանակներէն մինչեւ քսաներորդ դարու այս երկրորդ լուսաւոր Յիսնամեակը, Մարդկութեան անբաժան մասնիկը որպէս, քաղաքակիրթ Հայութիւնը եւս, Նո՛ր Յոյսերու իրագործման արդա՛ր ակնկալութեամբ, կ'ողջունէ 1975 թուի այս Նո՛ր Տարին։

Իր բովանդա՛կ գոյութեան ընթացքին, խաղաղութիւն երգած ու խաղաղութեան համար ծո՛վ արիւն թափած անմահական Հայ Ժողովուրդը, իր մարդկայնական ազնի՛ւ տեսլականներով, կը սիրէ ու կը մաղթէ, որ 1975 թուի այս Նոր Տարին յատկանշուի Արդարութեան, Հաւասարութեան, Խաղաղութեան եւ Ժողովուրդներու դրական այլ շինարար համագործակցութեան Գաղափարներուն փառապա՛նծ յաղթանակներով։

(Շար. տես էջ 4)



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՄԱՄՈՒԼ

## ՄԱԿի ԿԱՐԵՒՈՐ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Վ. ՎԻՆՈԿՐԱՏՈՎ

ՄԱԿի Ընդհանուր Ժողովը, Պաղեստինեան Հարցին կապակցութեամբ իր առած որոշումները եզրակացուց՝ վիճաբանութեանց աւարտին։ Քուէներու ջախջախիչ մեծամասնութեամբ, ժողովին մասնակցողները որդեգրեցին վերոյիշեալ որոշումները, որոնցմով նեցուկ կը կանգնէին Պաղեստինեան Արաբներու արդար իրաւունքներուն։ Առաջին որոշումը կեդրոնացաւ պաղեստինցիներուն ինքնորոշումի անվիճելի իրաւունքին, ազգային անկախութեան եւ ինքնիշխանութեան վրայ, առանց արտաքին միջամտութեան։ Ուրիշ վաւերաթուղթ մը ՊԱԿին կը շնորհէ՝ ՄԱԿէն ներս մշտնջենական դիտողի կանոնադրութիւն մը։

Միջազգային հանրային կարծիքը գոհունակութեամբ ողջունեց Պաղեստինեան Հարցին վիճաբանութեանց արդիւնքները ՄԱԿէն ներս։ Անտարակոյս, այս որոշումները կարեւոր դեր մը պիտի խաղան Պաղեստինի Արաբ Ժողովուրդին ապագայ ճակատագրին վրայ, ժողովուրդ, որուն զլացուեցաւ ինքնորոշումի իր արդար իրաւունքներուն տիրանալու կարելիութիւնները՝ 25 տարիներէ ի վեր։ Անշուշտ, այս կացութիւնը արդիւնք է Իսրայէլը կառավարող շրջանակներուն ծաւալողապաշտական քաղաքականութեան. անոնք չեն հանչնար հողամաս մը եւ ազգային օճախ մը ունենալու՝ Պաղեստինի Արաբներուն արդար իրաւունքը։ Ահա՛ թէ ինչո՞ւ, ՄԱԿի անդամներուն ՊԱԿին հանդէպ ցուցաբերած դրական կեցուածքը, Իսրայէլի ղեկավարներուն կողմէ սուր բացասական հակազդեցութեամբ դիմաւորուեցաւ։ Երկու անգամ, մէկ մը ՄԱԿէն ներս՝ Պաղեստինեան Հարցին մասին վիճաբանութեանց աւարտին, մէկ մըն ալ պատճառ որոշումին որդեգրման միջոցին, Թէլ-Աւիւ հանդէս եկաւ Պաղեստինի Արաբներուն հանդէպ կրքոտ յարձակումներով, մերժելով բոլորովին կարեւորութիւն տալ համաշխարհային բեմին վրայ կատարուած փոփոխութեանց։

Պաղեստինեան Հարցին մասին կատարուած վիճաբանութիւնները, ամենայն յստակութեամբ ցոյց տուին՝ որ Թէլ-Աւիւի ներկայ արկածախնդիր քաղաքականութիւնը կը ձգտէր ոմբակոծել բոլոր այն ճիգերը՝ որոնք ի գործ կը դրուէին Միջին Արեւելքի տագնապը լուծելու համար, ի մեծ քննադատութիւն միջազգային հանրային կարծիքին կողմէ։ Թանձրամիտ կամակորութիւնը՝ որով Թէլ-Աւիւ կը շարունակէ իր անյոյս քաղաքականութիւնը, իրեն միայն պիտի բերէ ամբողջական մեկուսացում։

(Շար. տես. էջ 2)

## ՆՈՐ ՏԱՐԻ

(ՀԱՏՈՒԱԾ)

Ամէն, ամէն ինչի մէջ
Նորն ենք սիրում մենք կեանքում,
Նա մեզ թռիչք է տալիս,
թեւ է տալիս ճախրանքում:
Իսկ դու նոր ես, իսկ դուն նոր,
հենց նոր իջար որպէս երգ,
Դեռ ձիւների մէջ ճերմակ
չկայ ոչ մի ոտնահետք
Ու բաժակն իմ աստղացոլ
լոյսերի մէջ պահած վեր
Ես քո կենացն եմ խմում,
Նորեկ տարի, նոր իմ սէր...
Ե՛կ, իմ երկրի զինակից,
ջահելութիւն իմ հողի,
Ե՛կ, սփռիր մեր առջեւ
նոր հեռուներ, նոր ուղի.
Պողպատ ձուլող բանուորի
պողպատին տո՛ւր կարծրութիւն
Այգեգործին՝ առատ բերք
ու բերքերին՝ քաղցրութիւն։
Ե՛կ, նոր տարի, ու դարձիր
նոր երազը մեր սրտի,
Տիեզերքներ ձեւող նոր
աստղ դարձիր ու հրթիռ,
Դարձի՛ր մարմին առած տենչ,
դարձիր երգ մի յաղթաձայն
Եւ աշխարհը կամրջող
խաղաղութեան ծիածան...

ՎԱՀԱԳՆ ԴԱՒԹԵԱՆ





# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Գահիրէ Հեռ. 934908 | ԱՒԵՏԻՍ Ն. ՉԱԳԸՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ<br>Աթապայի հրապարակ<br>Գահիրէ Հեռ. 906433-906451 | ՆԱՍԻՊ-ԹԸՐԳԸՄ | ԱՐԹՕ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 826211-826291 | ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 28173 |
| ԵԴՈՒԱՐԴ ՋՕՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906479 | ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 900186 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՏՐՈՍ ՊԵՏԻԿԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 63459 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԷՇԷԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62542 | ՎԱՐԴԳԷՍ ԵՒ ԱԼՊԷՐ<br>ՔՐԷՏԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>Գահիրէ Հեռ. 902912-862386 |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 47240 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՌԱՖՖԻ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿԱԶՈՒՆ ՔԻՒՐՔՃԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 861452 | STUDIO ANTRO<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>37, Թալաաթ Հարպ փողոց<br>Գահիրէ Հեռ. 75542 | ԱՐՄԻՆԷ ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՆԿԱՐՉՈՒՀԻ<br>Գահիրէ Հեռ. 54480 |
| ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>ԳԱՄԳՈՒՄ ԿԱՐԱՍԻՆԵՐ<br>195, Ռամսէս Պողոտայ<br>Գահիրէ Հեռ. 900738 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱԼՊԷՐ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 72050 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 865920 | ՏՈՔԹ. ՀԱՆՐԻ ԲԵՏԵՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 73321 | ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 918516 |
| MAISON ROYALE<br>ԽՈՍՐՈՎ ՋԱՔԱՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910402 | ՄԷԹՐ ՊԱՐՈՅՐ ՄԱՍԻԿԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 42259 | ARABIAN NEON &<br>FLUORESENT LIGHT CO.<br>ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ<br>135, Մոհամէտ Ֆարիտ փողոց, Ապտին<br>Գահիրէ Հեռ. 43816-44792 | ՍԱՐԳԻՍ ՎՈՒԳՈՒԹԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 917039 | MICKY MOUSE<br>ՎԱՐՈՒԺԱՆ ԱՋՈՒԿԵԱՆ<br>26 Յուլիս պողոտայ, թիւ 8<br>Գահիրէ Հեռ. 915570 |
| ELPAR SHOES<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԷՐԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 24073 | L I L I<br>ՅԱԿՈԲ Մ. ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ<br>ԿՕՇԻԿԻ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ<br>22, Քասր էլ Նիլ փողոց<br>Գահիրէ Հեռ. 54480 | ՎԱՀԷ ԴԵՐՁԱԿԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>103, Կումհուրիէ փողոց<br>Գահիրէ Հեռ. 900563 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԹՈՎՄԱՍ ՄԱՆՃԸԼԸՔԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐԱՊԵՏ ԹԵՐՋԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 33713 |
| ՆՈՒՊԱՐ ԿԷՐԻԿԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ | ՕՐ. ԶԱՊԷԼ ՍՏԵՓԱՆԵԱՆ<br>Գահիրէ | MAISON D'ART<br>ՅՈՒԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>29, Ապտէլ Խալէք Սարուաթ<br>Գահիրէ Հեռ. 40584 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27139 | ԺԱԳ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 911220 |
| Ն. ԵՒ Ե. ԴԱՒԻԹԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>Manchester House<br>Աղեքսանդրիա Հեռ. 24996 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 934872 | CORDONNERIE CECIL<br>ՎԱՀՐԱՄ ԹՕՍՈՒՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 22425 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԱՄ ՄՈՎՍԷՍԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 867554 | ՎԱՀԱԳՆ ՏԷՓՕՅԵԱՆ<br>ԵԼԵԿՏՐԱԳԷՏ<br>Գահիրէ Հեռ. 79381 |

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՊԱՐԲԵՐԱԹԵՐԹ
2 ՅՈՒՆՎ 1975

# ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ՓՐՈՖ. ՏՈՔԹ. ԼՈՒԻԶԱ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ
### ՄԱՀԱՑԱՒ ՑԱՒԱԼԻ ԱՐԿԱԾԻ ՄԸ ՀԵՏԵՒԱՆՔՈՎ

Խոր կսկիծով տեղեկացանք, որ անցեալ 2 Դեկտեմբեր, Երկուշաբթի, ինքնաշարժի ծանր արկածի մը հետեւանքով մահացաւ՝ Ֆրեզնոյի Գալիֆորնիոյ Պետական Համալսարանի հայոց պատմութեան դասախօս եւ նոյն համալսարանին մէջ Հայկական Ուսմանց համակարգող Տոքթ. Լուիզա Նալպանտեան:

Ողբացեալը, որ 48 տարեկան երիտասարդ հասակին կը մահանայ, միայնակ կ'ապրէր Ֆրեզնոյի մէջ: Ան տօնական առթիւ Սան Ֆրանսիսկօ իր հարազատներուն այցի գացած էր, ու իր վերադարձի ժամանակ, այդ քաղաքին մերձակայքը՝ Սթանիսլաուս Քընդրի կոչուած վայրին մօտերը, իր վարած ինքնաշարժը արկած մը կ'ունենայ ու նոյն վայրկեանին կը մահանայ ահռելի կերպով:

Թաղման կարգը եւ յուղարկաւորութիւնը կատարուեցան Ուրբաթ 6 Դեկտ. 1974, Սան Ֆրանսիսկոյի հայոց Ս. Յովհաննէս եկեղեցիին մէջ:

Ֆրեզնոյի մէջ, 8 Դեկտ. 1974, Կիրակի երեկոյ մը տեղի ունեցաւ քաղաքին Newman Centerին մէջ, որ հայերէնով վարեց հայոց հոգեւոր հովիւը՝ Արժ. Տ. Շահէ Քհնյ. Ալթունեան: Այս առթիւ, Գալիֆորնիոյ Համալսարանին պատմաբանասիրական բաժնի տնօրէնը՝ Տոքթ. Սթիֆըն Պենըր, խօսեցաւ ողբ. Լուիզա Նալպանտեանի մասին ու ծառայութեանց մասին, վեր առաւ անոր արժանիքները, ու նշեց այս ցաւալի մահով հայութեան եւ համալսարանին կրած ծանր կորուստը:

Ողբացեալին կենսագրական գիծերը պիտի տանք յաջորդով:

## ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆԻ
### «ԱՐՄԻՆԻԸՆԶ»Ը ԲԵՄԱԴՐՈՒԵՑԱՒ ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԷՋ

*Անցեալ Հոկտեմբեր և Նոյեմբեր ամիսներուն ընթացքին, Նիւ Եորքի Հայոց Ս. Վարդան Մայր Տաճարի «Գալուստեան» սրահին մէջ, մեծ պատրաստութեամբ բեմադրուեցաւ հայազգի մեծ գրող Ուիլիըմ Սարոյեանի «Արմինիընզ» թատերախաղը, որուն գործող անձերու մաս կազմեցին հեռատեսիլի և սինեմայի հանրածանօթ անուանի դերասաններ՝ Պըրթ Եունկ և Ժոզէֆ Ռանեօ:*

*Ներկայացումը ղեկավարեց Եդ Սեդրակեան, որ «Դերասաններու Սթուտիօ»ի տնօրէնն է:*

«Ջահակիր»ի այս թիւին մէջ (էջ 5) կարդալ հեղինակին՝ Ուիլիըմ Սարոյեանի խորհրդածութիւնը իր այս նոր հեղինակութեան մասին:



ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆ

## Ս. ԾՆՆԴԵԱՆ ԾԻՍԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ
### ՆԻՒ ԵՈՐՔԻ ՊԱՏԿԵՐԱՍՓԻՒՌԷՆ ՊԻՏԻ ՏՐՈՒԻՆ

Յառաջիկայ Կիրակի, 5 Յունուար 1975, կէսօրին, Նիւ Եորքի պատկերասփիւռէն պիտի տրուի Ս. Ծննդեան եւ Մկրտութեան արարողութեանց ընթացքին «Ջրօրհնէք»ի ծիսակատարութիւնը, որուն պիտի նախագահէ Առաջնորդ Գերշ. Տ. Թորգոմ Արք. Մանուկեան, շրջապատուած Տ. Յուսիկ Վրդ. Պաղտասարեանէ, Տ. Բակուր Վրդ. Տասուրեանէ, Տ. Մամբրէ Քհնյ. Գուզուեանէ եւ Դանիէլ Քհնյ. Հալլաճեանէ:

Եկեղեցւոյ «Կոմիտաս» երգչախումբը, ղեկավարութեամբ Տոքթ. Արփըր Միսեանի, պիտի կատարէ երգեցողութիւնները:

Այս յայտագիրը դիտելի պիտի ըլլայ Նիւ Եորքէն, Նիւ Ճըրզիէն եւ Քոննէքթիքըթէն՝ թիւ 4 կայանի միջոցաւ:

## ՖԻԼԱՏԵԼՖԻՈՅ ԳՈԼԷՃԻ ՄԸ ՄԷՋ
### ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ ՆՈՐ ԴԱՍԸՆԹԱՑՔ ՄԸ

Յառաջիկայ վեցամսեայ շրջանին համար, Ֆիլատելֆիոյ «Սէն Ժոզէֆ» գիշերային Գոլէճի մէջ հաստատուած է հայերէն լեզուի դասընթացք մը, որ առաջին անգամ ըլլալով մաս կը կազմէ վարժարանին ծրագիրին:

Հայերէն լեզուի անտեղեակ աշակերտներու համար նախապատրաստական այս դասընթացքը պիտի աւանդէ՝ Ուայնվուտի հայկական Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ եկեղեցիին հովիւը՝ Հոգշ. Տ. Զաւէն Ծ. Վրդ. Արզումանեանը:

Հայերէն լեզուի այս նոր դասընթացքը պիտի սկսի 15 Յունուարին:

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Ս. Դ. ՀՆՉ. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ Ուստրի (Մասս.- ԱՄՆ) մասնաճիւղը, առ ի գնահատանք թերթիս հայրենասիրական ուղղութեան կը նուիրէ 25 Տոլար:*

*Տէր և Տիկին ՍԻՄՈՆ ՍԱՄՍՈՆԵԱՆ (Նիւ Եորք) Նոր Տարուայ առթիւ կը շնորհաւորեն և թերթիս կը նուիրեն 20 Տոլար:*

*Նոր Տարուայ և Ս. Ծնունդի տօնական առիթներով, Տիկին ԼՈՒՍԻ ՋԻՆՋԻՆԵԱՆ առ ի քաջալերութիւն՝ թերթիս կը նուիրէ 200 ե. դ.:*

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ
(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

*Տիկին Զարուհի Ֆերմանեան, Նասիպեան, Ֆերմանեան Տիրատուր գերդաստաններու հոգեհանգստեան առթիւ կ'ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.*

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 1000 |
| Մարմնային գեղեցմունքին | 1000 |
| Դպրաց դասուն | 500 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

*(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)*

*Իր տագրոջ՝ Ողբ. Հայկ Թապաքեանի մահուան քառասունքին առթիւ, Տիկին Սիրարփի Թափաքեան կ'ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.*

| | |
|---|---|
| Գալուստեան Ազգային Վարժարանին | 200 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

*(Ստանալ «Ջահակիր»էն)*

*Իրենց շատ սիրելի եղբօրզաւակին և զարմիկին՝ ողբ. Կարօ Թուֆայեանի կսկծալի մահուան Բ. տարելիցին առթիւ և անոր քաղցր յիշատակին՝ Տէր և Տիկին Յարութիւն և Սիրանոյշ Թուֆայեան և զաւակունք (Մ. Ն.) կը նուիրեն.*

| | |
|---|---|
| Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Գերեզմանատան | 300 |
| «Այծեմնիկ»ի Հանգստեան Տան | 300 |
| Հ.Մ.Ը.Մ.-Նուպարին Հելիոպոլիս | 300 |
| «Յուսաբեր»ին | 200 |
| «Արեւ»ին | 200 |
| «Ջահակիր»ին | 200 |

*(Ստանալ «Արեւ»էն)*

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

*Ողբ. Յակոբ Շահպէնտէրեանի (Աղեքս.) մահուան քառասունքին առթիւ, Տէր և Տիկին Վահան Խաչերեան կը նուիրեն 100 ե. դ.:*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ
### ԳԱՀԻՐԷ



ԱՄԱՆՈՐԻ
ԵՒ
Ս. ԾՆՈՒՆԴԻ
ԱՌԹԻՒ

### ՀԱՆԴԷՍ – ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
### ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ
«ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ» ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԱՐՄՆԻ
Շաբաթ, 4 Յունուար 1975, կ. ե. ժամը 7.30ին
ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

### ՏՕՆԱԾԱՌ

*ԺԱՄԸ 9.30ԷՆ ՍԿՍԵԱԼ*

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՄԲ

**Big Brothers**

Առաջնակարգ Նուագախումբին

ԸՆԴՀ. ՄՈՒՏՔ 34,5 Ե. Դ.

Կաղանդ Պապային նամակը պարտաւորիչ է փոքրիկներուն համար:

*Այժմէն ապահովեցէք սեղանները՝ հեռաձայնելով թիւ 933296, 59706, կամ դիմելով Ընթերցասրահ, ամէն երեկոյ ժամը 8-10, (հեռ. 934908):*

---

Հինգշաբթի, 9 Յունուար 1975, կ. ե. ժամը 9ին
ԱՄԱՆՈՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ

### ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ

ԸՆԿԵՐԱՅԻՆ ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ԽԱՂԵՐ
ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ԿԱՐՃ ԹԱՏԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ (SKETCH)
*Սիրալիր հրաւէր բոլորին*

---

Կիրակի, 12 Յունուար 1975, կ. ե. ժամը 3ին
«ՍԷՆԹ ՖԱՄԻՅ»Ի ԴԱՇՏԻՆ ՎՐԱՅ (24 ՖԱՐԻՏ ՓՈՂՈՑ, ՀԵԼԻՈՊՈԼԻՍ)

### Ֆութպոլի Բարեկամական Մրցում

### ՑԱՄԱՔԱՅԻՆ ՈՅԺԵՐՈՒ ՋՏԵԱԼ ԽՈՒՄԲԸ
ԸՆԴԴԷՄ
### Հ.Մ.Մ.Ի (ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ)

*Կը խնդրուի հայ մարզասէրներէն քաջալերել իրենց ներկայութեամբ մեր նորակազմ խումբը:*



دار شوشة للطباعة رقم ايداع دار الكتب ٥٨٠ / ٧٥

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻՆ ԱՌԻԹՈՎ՝

## Աշխատաւորուհիներուն կը ձօնեմ

Սիրելի Խմբագրութիւն

Պատահական չէ, որ Գարնանը՝ վառ զգեստ է հագնում անտառը, գունագեղ գորգերը փռւում դաշտերում, նորահարսի պէս նազանքով մեղմ քամուց օրօրւում են նորաբողբոջ ծառերը: Անտառները զմրուխտ գօտով են օղակւում: Գարնանն է, որ հողի երկունքից կեանք, կեանք են առնում ամէն մի ծիլ, յուզմունք բերում աշխարհին մարդկանց սրտերում նոյնպէս Գարունն է բուրում: Եւ Գարնան Արևի շողերն են, որ թափանցեցին մարդկանց ներքնաշխարհում և այդ սուրբ հանդիսացաւ՝ որ Գարնան առաջին ամսուայ առաջին օրերուն, կանայք ստանան ազատագրման իրաւունք: Եւ այդ օրից ի վեր կանայք հաւասար, կողք — կողքի քայլում, ստեղծագործում, կառուցում են տղամարդկանց հետ:

# ԿԱՆԱՆՑ

Գիտէ՞ք կանայք ինչ կարող են լինել:

Կինը՝ կարող է ինժեներ լինել,
Կինը՝ կարող է շինարար լինել,
Կինը՝ կարող է ոսկերիչ լինել,
Կինը՝ կարող է դերասան լինել,
Կինը՝ կարող է տիեզերք նուաճել,
Կինը՝ կարող է երեխայ ծնել
Երեխայ ծնել ու դաստիարակել:

Կանայք՝ կարող են ամէն ինչ լինել:

# ՄԱՅՐԵՐԻՆ

Գարնան նոր բացուած
Մանուշակի պէս,
Մօր սիրտը բարի է ու հեզ:
Արշալոյսէն բացուող
Երկնքի պէս,
Մօր սիրտը մաքուր է
Լուրդ դէպի քեզ:
Աղբիւրի կարկաչի պէս
Օրօր է ասել,
Աստուածամօր պէս

Ծո՛ նկի՛ է եկել,
Ու աղօթել քեզ,
Այդ մայրըդ է հեզ:
Գարնան նոր բացուած
Վարդի թփի պէս,
Թարմ է մօր սէրը
Հպարտ է ու հեզ:
Իր կեանքից աւելի,
Մայրը կարող է՝
Միայն սիրել քեզ:

* * *

Ողջունում եմ Ձե՛զ, Մայրե՛ր, կանա՛յք,
Արեւվառ Հայաստանից, արեւի ոսկէ շողերով
Ձեզ ուղարկում եմ, իմ ողջոյնը՝ բոլոր բոլոր
Մայրերին, կանանց՝ ովքեր խօսին լայն
Իմաստով մայրեր են իսկական կանայք:

Երեւան, 14 Փետր. 1975

ՌԻՄԱ ՆԵՐՍԻՍԵԱՆ

Ստացանք Սուրբ Ծննդի եւ Նոր Տարուայ բացիկը եւ շատ ուրախացանք:

Թանկագին բարեկամներ,

Մի ժամանակ իմ հասցէին ուղարկուած «Ջահակիր»ը ընթերցում էին մի քանի հոգի, իսկ այժմ նրանց թիւը հասնում է հարիւրների, որովհետեւ այժմ ես աշխատում եմ Գիտարանի Ընթերցասրահի վարիչ: Մեր Ընթերցասրահում իր ուրոյն տեղը ունի նաեւ «Ջահակիր» շաբաթաթերթը, որը մեծ սիրով ընթերցւում է թէ՛ տեղի հայերի կողմից եւ թէ՛ հայրենադարձ հայերի կողմից:

«Ջահակիր» թերթին սրտատրոփ սպասում են՝ Գահիրէից հայրենադարձ Արաքս Տայեան, Պուլկարիայից եկած Կիրակոսեան Արամը, Պէյրութից՝ Սիրանոյշը եւ այլ բազմաթիւ մարդիկ: Ես այնչափ ուրախանում եմ, երբ սեղանին դնելով նրանք փնտրում են «Ջահակիր»ին:

Սիրելինե՛ր, մօտենում է «Կանանց Միջազգային Տօնը»: Այդ՝ օրուայ առթիւ, իմ սովորութեան համաձայն ուղարկում եմ շնորհաւորագիր՝ «Ջահակիր» շաբաթաթերթում աշխատող կանանց, եւ ընթերցող կանանց շնորհաւորում եմ, ու բանաստեղծութիւնս նուիրում եմ ՄԱՅՐԵՐԻՆ:

Երեւան, 15 Փետր. 1975

ՌԻՄԱ ՆԵՐՍԻՍԵԱՆ

ՃԱՐՕՆ

## ՀԱՅ ՆԿԱՐԻՉԻ ՄԸ ԳՈՐԾԵՐԸ ԹՈՔԻՈՅԻ ՄԷՋ ԿԸ ՑՈՒՑԱԴՐՈՒԻՆ

Սովետ 113 արուեստագէտներու մաս կը կազմէ Յովհաննէս Մուրատեանը, որուն գործերէն ալ ցուցադրուեցան Թոքիոյի (Ճափոն) մէջ կազմակերպուած նկարչական ցուցահանդէսին մէջ:

Հայ նկարիչին երկու գործեր՝ «Հայկական Բնանկար» և «Պտուղներ» պաստառները մեծապէս գնահատուեցան՝ ցուցահանդէս այցելող արուեստի քննադատներուն կողմէ:

Մուրատեան ցուցահանդէսներ տուած է մայր հայրենիքի, Բուլղարիոյ և Հունգարիոյ մէջ:

# ★ ԱՍՏՂԵՐԸ ԲՒՒՐԱԿԱՆԻ ՎՐԱՅ ★

ՎԱՆՏԱ ՊԵԼԵՑՔԱՅԱ

Ի՞նչով բացատրել ակադեմիկոս Համբարձումեանի բոլոր վարկածների մարգարէական լինելը: Տաղանդո՞վ: Փուլքովցի աստղագէտների լաւ դպրոցո՞վ, ուր սովորել է ապագայ ակադեմիկոսը: Կամ գուցէ նրանո՞վ, որ գիտութեան մէջ Համբարձումեանն օրկանապէս հապճեպ եզրահանգումներ չի հանդուրժում: Օրինակ, աստղային զուգակցութիւնների մասին եղող աշխատանքի հիմքերը, Համբարձումեանը դրել է զուգակցութիւնների իսկ գիւտից համարեայ տասնհինգ տարի առաջ...

Մի անգամ թերթում հաղորդագրութիւն տպուեց, ուր Համբարձումեանի աշխատանքների մի մասը վերագրում էին մի ուրիշ գիտնականի, որ անգեալում նոյնիսկ այդ գաղափարների հակառակորդն էր եղել: Աստղադիտարանը զայրոյթից եռում էր, աշխատակիցները հերքում էին պահանջում: Իսկ Վ. Համբարձումեանը սկզբում նոյնիսկ չէր կարողանում հասկանալ, թէ ինչ է պատահել, ի՞նչու բոլորն այդպէս զայրանում են: Յետոյ նա ծիծաղեց ու կատակեց. «Բայց չէ՞ որ լաւ է, որ մեր հակառակորդները հիմա ուզում են մեր հեղինակակիցները դառնալ»: Եւ բողէ անց՝ մոռացաւ թէ՛ յօդուածի և թէ՛ աշխատակիցների զայրոյթի մասին:

Վ. Համբարձումեանի առաւել սիրելի և տաղանդաւոր աշխատակիցներից, Հայաստանի ԳԱ ակադեմիկոս Բ. Ե. Մարգարեանը մի անգամ ասաց իր տնօրէնի մասին. «Նա ոչ մի վայրկեան չի դադարում իր գիտութեան շուրջ մտածելուց թէ՛ տնից աշխատանքի գնալիս, թէ՛ ակադեմիայում նիստերին մասնակցելիս, թէ՛ պուրակում զբօսնելիս և թէ՛ թոռնիկների հետ խաղալու ժամանակ: Շրջապատը չի նկատում այս, քանի որ Համբարձումեանն իր արածի և խօսակցի հանդէպ լեցուն է ուշադրութեամբ: Միևնոյն ժամանակ նրա մտքերի ստորին հոսանքը, ոչ մի վայրկեան կանգ չի առնում»:

«Եթէ Համբարձումեանը գործում է աշարքներ, որոնք անբացատրելի են հիմա, եթէ սկսում է ձեզ բոլորովին անհասկանալի մի աշխատանք՝ սպասեցէ՛ք: Մի քանի տարի յետոյ ամէն ինչ կը պարզուի» - ասաց իր ուսուցչի մասին ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ Վիկտոր Սոբոլևը՝ Լենինկրատի համալսարանի Համբարձումեանի հիմնած աստղաֆիզիկայի ամբիոնի այժմեան վարիչը:

Իրօք, միայն հիմա բոլորի համար պարզ դարձաւ, որ Համբարձումեանին զբաղեցրած բոլոր հարցերը պատահական չեն ինչքան էլ նրանք իրարից հեռու լինեն: Նրա արտայայտած բոլոր գաղափարները շարւում են, ինչպէս աղիւսները շէնքում, աստղերի և գալակտիկաների բարեշրջման մի ամբողջական ու կուռ տեսութեան մէջ:

Քսան երկու տարեկան Վիկտոր Համբարձումեանը՝ Լենինկրատի համալսարանում ամբիոն ստացաւ ու շուտով, դեռ բոլորովին երիտասարդ, դարձաւ նրա փոխ-ռեկտորը: Համազասպ Համբարձումեանը խորապէս համոզուած էր, որ իր որդին ատակ չէ վարչական գործունէութեան, գիտական խոշոր հիմնարկութեան ղեկավարման: «Դու դրանով միայն կը վնասես քեզ,- ասում էր նա որդուն,- կրճատելով քո ստեղծագործական աշխատանքի հնարաւորութիւնները: Իսկ քո վրայ դրուած պաշտօնում արդիւնաւէտ լինել, ինչքան էլ ցանկանաս, չես կարող»: Նա այս մտքերը քանիցս զարգացրել է Սոբոլևի առաջ,

(Շար. եղս էջ 4)

